Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

(Բ) Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ.
ԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

№ 3 (46)

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

Հ Կ (Բ) Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

№ 3 (46)



ՀՍՍՌ Ժողկոմսովետին կից Պոլիգրաֆ. և Հրատ. վարչության № 2 տպարան, Երևան

## ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ (ԲՈԼՇԵՎԻԿՆԵՐԻ) ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ

# Դ Ի Մ Ո Ւ Մ Ը

## ԲՈԼՈՐ ԸՆՏՐՈՂՆԵՐԻՆ,

*ԲԱՆՎՈՐՆԵՐԻՆ ՈՒ ԲԱՆՎՈՐՈՒՀԻՆԵՐԻՆ, ԳՅՈՒՂԱՑԻՆԵՐԻՆ ՈՒ ԳՅՈՒՂԱՑԻՈՒՀԻՆԵՐԻՆ, ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ԵՎ ՌԱԶՄԱ-ԾՈՎԱՅԻՆ ՆԱՎԱՏՈՐՄԻ ՌԱԶՄԻԿՆԵՐԻՆ, ՍՈՎԵՏԱԿԱՆ ԻՆՏԵԼԻԳԵՆՑԻԱՅԻՆ*

*Ընկերնե՛ր։*

*1946 թվի փետրվարի 10-ին մեր երկրի քաղաքացիները ընտրելու են Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Գերագույն Սովետի դեպուտատներին։*

*Ութ տարի է անցել ՍՍՌՄ Գերագույն Սովետի առաջին ընտրությունների ժամանակվանից։ Պատերազմը հնարավորություն չտվեց հերթական ընտրությունները կատարելու Սովետական Կոնստիտուցիայով նախատեսված ժամկետին։ Այժմ, երբ Հայրենական Մեծ պատերազմը հաղթականորեն ավարտված է և սկսվել է խաղաղ զարգացման ժամանակաշրջանը, սովետական ժողովուրդը հնարավորություն ունի կատարել ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատների ընտրությունները։*

*Անցյալ ընտրություններին բոլշևիկների պարտիան ընտրողներին կոչ էր անում իրենց քվեն տալ կոմունիստների և անկուսակցականների բլոկի թեկնածունե-*

յին։ Սովետական Միության քաղաքացիներն ու քաղաքացուհիները այն ժամանակ միահամուռ կերպով քվեարկեցին հօգուտ կոմունիստների և անպարտիականների բլոկի թեկնածուների։ Դրանով իսկ ժողովուրդը միահամուռ կերպով հավանություն տվեց կոմունիստական պարտիայի քաղաքականությանը և իր լիակատար վստահությունը հայտնեց նրան։

Առաջիկա ընտրություններին բոլշևիկների պարտիան նույնպես հանդես է գալիս անպարտիական բանվորների, գյուղացիների և ինտելիգենցիայի հետ միասնական բլոկ կազմած, սերտ դաշինք կնքած։ Ինչպես և անցյալ ընտրական կամպանիայի ժամանակ, պարտիան ընտրություններին մասնակցում է պրոֆեսիոնալ միությունների, կոմերիտմիության և աշխատավորների մյուս կազմակերպությունների ու ընկերությունների հետ միասին։

Կոմունիստների պարտիան հույս ունի, որ ՍՍՌՄ Գերագույն Սովետի առաջիկա ընտրություններին ընտրողները նորից վստահություն կցուցաբերեն կոմունիստական պարտիային և հավանություն կտան նրա քաղաքականությանը։ Պարտիան հույս ունի, որ բոլոր ընտրողները կքվեարկեն հօգուտ դեպուտատության այն թեկնածուների, որ կոմունիստական պարտիան առաջադրել է անպարտիականների հետ միասին, հօգուտ կոմունիստների և անպարտիականների բլոկի թեկնածուների։

Ինչո՞ւ կոմունիստական պարտիան հույս ունի, որ սովետական ժողովուրդը առաջիկա ընտրություններին հավանություն կտա նրա քաղաքականությանը և ընտրողները իրենց քվեն կտան կոմունիստների ու անպարտիականների բլոկի թեկնածուներին։

Բոլշևիկների պարտիան հույս ունի, որ ժողովուրդը վստահություն ցույց կտա և ընտրողները կպաշտպանեն կոմունիստների ու անպարտիականների բլոկի թեկնածուներին, որովհետև սովետական մարդիկ կարող էին բազմամյա փորձով համոզվել պարտիայի



քաղաքականության ճշտության մեջ, որը համապատասխանում է ժողովրդի արմատական շահերին, համոզվել, որ բոլշևիկների պարտիայի ամբողջ գործունեությունը անձնուրաց ծառայություն է ժողովրդին։

Բոլշևիկների պարտիայի ղեկավարությամբ մեր երկրի ժողովուրդները հաստատեցին սովետական իշխանություն և այն պաշտպանեցին ինտերվենտներից ու սպիտակգվարդիականներից։

Խաղաղ շինարարության տարիներին կոմունիստական պարտիան անդուլ կերպով պայքարում էր երկրի ժողովրդական տնտեսության վերելքի և ժողովրդի նյութական բարեկեցության բարձրացման համար։ Բոլշևիկյան պարտիայի ճիշտ քաղաքականությունը մեր երկիրը դարձրեց առաջավոր ու հզոր սոցիալիստական տերություն։ Բնակչության կյանքը տարեցտարի դառնում էր ավելի լավ, ավելի կուլտուրական և ունևոր։ Հաշվի առնելով մեր երկրի վրա իմպերիալիստական ավազակների հարձակման սպառնացող վտանգը, բոլշևիկների պարտիան սովետական մարդկանց կոչ էր անում առանց ձեռքերը ծալելու աշխատել Հայրենիքի պաշտպանունակությունը ուժեղացնելու համար։ Աշխատավորներն ուժ և միջոց չէին խնայում ՍՍՌՄ պաշտպանությունը ամրապնդելու, սովետական պետության ռազմա-տնտեսական հզորությունը բարձրացնելու համար։

Ֆաշիստական Գերմանիայի ուխտադրուժ հարձակումը Սովետական Միության վրա մեր երկիրը դրեց ամենածանր փորձությունների առաջ։ Մեր հայրենիքը դեռևս երբեք չէր ենթարկվել այդպիսի սարսափելի վտանգի։ Գերմանական ֆաշիստները իրենց նպատակ էին դրել՝ ոչնչացնել սովետական պետությունը, զավթել մեր հողը, կողոպտել երկրի հարստությունները, ոչնչացնել սովետական միլիոնավոր մարդկանց, ստրկացնել մեր ժողովրդին, դատապարտել նրան հավիտենական մթի ու տառապանքի։ Խոսքը վերաբերում էր սովետական պետության կյանքին ու մահվանը, ՍՍՌՄ

ժողովուրդների կյանքին ու մահվանը, այն բանին, թե Սովետական Միության ժողովուրդները ազա՞տ պետք է լինեն, թե ընկնեն ստրկության մեջ։

Բոլշևիկների պարտիայի կոչով, ընկեր Ստալինի կոչով սովետական երկրի բոլոր ժողովուրդները ոտքի ելան պաշտպանելու Հայրենիքը։ Ժողովրդի բոլոր ուժերը ի սպաս դրվեցին հասնելու համար մեկ նպատակի՝ ջախջախել գերմանա-ֆաշիստական զավթիչներին։ Հաղթանակը նվաճելու համար սովետական մարդիկ կանգ չէին առնում ո՛չ մի զոհողության և դժվարության առաջ, կայուն կերպով տանում էին պատերազմի բոլոր դժվարությունները և զրկանքները, հերոսաբար մարտնչում և աշխատում էին հանուն Հայրենիքի պաշտպանության։ Պատմությունը չգիտե իր հայրենիքի համար ժողովրդի անձնազոհ պայքարի ուրիշ այդպիսի օրինակ։

Պատերազմի առաջին շրջանում մեր բանակը ժամանակավոր անհաջողություններ էր կրում։ Թշնամուն հաջողվեց օկուպացնել սովետական տերիտորիայի զգալի մասը։ Մեզ մոտ եղան հուսահատական դրության մոմենտներ, երբ Կարմիր Բանակը հարկադրված էր նահանջել՝ թողնելով մեր հարազատ գյուղերն ու քաղաքները։ Այդ ծանր ժամանակ սովետական ամբողջ ժողովուրդը մեծ վստահություն և ամուր պաշտպանություն ցույց տվեց կոմունիստական պարտիային և Սովետական կառավարությանը։ Կոմունիստական պարտիան բարձր է գնահատում սովետական ժողովրդի վստահությունը, որ նրան ցույց տրվեց այնքան դժվարին ժամանակ, թանկ է գնահատում այդ վստահությունը։

Թշնամու դեմ մղած դաժան մարտերում սովետական ժողովուրդը Լենինի-Ստալինի պարտիայի առաջնորդությամբ հաղթանակ տարավ։ Մեր արդար գործը հաղթանակեց։ Ջախջախված են ինչպես գերմանական, այնպես էլ ճապոնական իմպերիալիստ-զավթիչները։ Այժմյանից մեր Հայրենիքը փրկված է Արևմուտքում



գերմանական արշավանքի և Արևելքում՝ ճապոնական արշավանքի սպառնալիքից։

Գերմանական և ճապոնական իմպերիալիստների դեմ տարած հաղթանակի հետևանքով Սովետական Միությունը ամրապնդեց իր սահմանների անվտանգությունը, պաշտպանեց մեր երկրի ժողովուրդների պետական շահերը, նրանց ազգային ինքնուրույնությունը, ազատությունը և կուլտուրան։

Սովետական ժողովուրդը, Կարմիր Բանակը գերմանա-ֆաշիստական ստրկացնողներից ազատագրեցին Արևմտյան Ուկրաինան, որը պատերազմից քիչ առաջ վերամիավորվել էր Սովետական Միության հետ։ Ներկայումս սովետա-լեհական սահմանի մասին Լեհաստանի հետ կնքված պայմանագրով վերջնականապես որոշված են Սովետական Ուկրաինայի Արևմտյան սահմանները։ Ռումինիայի հետ կնքված պայմանագրով Սովետական Միության կազմի մեջ է մտել Հյուսիսային Բուկովինան։ Չեխո-Սլովակիայի հետ կնքված պայմանագրի ուժով մեր պետության կազմի մեջ է մտել Անդրկարպատյան Ուկրաինան։ Այժմյանից Սովետական Ուկրաինան ամբողջովին միավորում է ուկրաինական բոլոր հողերը, որի մասին դարերով երազում էր ուկրաինական ժողովուրդը։

Իրականացել են բելոռուսական ժողովրդի դարավոր իղձերը միասնական ազգային պետության մեջ վերամիավորվելու մասին։ Այժմ Լեհաստանի հետ կնքված պայմանագրով որոշված են Սովետական Բելոռուսիայի արևմտյան սահմանները։ Բելոռուսներով բնակեցված բոլոր տերիտորիաները վերջնականապես վերամիավորված են միասնական Սովետական Բելոռուսիայի մեջ։

Սովետական Մոլդավիան ամբողջովին միավորել է մոլդավական բնակչություն ունեցող տերիտորիաները։

Մերձբալթիկայում գերմանական լծից ազատա-

գրված են Սովետական Լիտվան, Սովետական Լատվիան, Սովետական Էստոնիան։

Իրականացված է լիտվական ժողովրդի արդարացի պահանջը, նրան է վերադարձված գերմանացիների կողմից Լիտվայից բռնի ուժով պոկված Կլայպեդայի մարզը։

Սովետական Միությանն է միացված Քյոնիգսբերգի մարզը, և մենք այժմ չսառչող լավ նավահանգիստ ունենք Բալթիկ ծովի ափին։

Հյուսիս-արևմուտքում մենք Ֆինլանդիայի հետ մեր սահմանը վերականգնել ենք համապատասխան 1940 թվի Սովետա-Ֆիննական պայմանագրի։ Հյուսիսում Սովետական Միությանն է վերադարձված Պեչենգայի շրջանի տերիտորիան։ Սովետական Միությունը այժմ Ֆինլանդիայի տերիտորիայում ռազմա-ծովային բազա ունի Պարկկալա-Ուդդում։

Հեռավոր Արևելքում մեր երկրին են վերադարձված Հարավային Սախալինը և Կուրիլյան կղզիները։ Այժմյանից դրանք ծառայելու են ո՛չ թե որպես Սովետական Միությանը օվկիանոսից անջատող միջոց և մեր Հեռավոր Արևելքի վրա ճապոնական արշավանքի բազա, այլ օվկիանոսի հետ Սովետական Միության ուղիղ կապի միջոց և ճապոնական ագրեսիայից մեր երկրի պաշտպանության բազա։ Վերականգնված են մեր պետության իրավունքները Պորտ-Արտուրի և Դալնիի շրջանների վրա՝ Մանջուրիայի հարավային մասում, որը նույնպես ամրապնդում է Սովետական Միության արևելյան սահմանների անվտանգությունը։

1941—1945 թ. թ. Հայրենական պատերազմում սովետական ժողովրդի տարած հաղթանակը հանդիսանում է Համամիութենական Կոմունիստական (բոլշևիկների) պարտիայի տրիումֆը։

Լենինի-Ստալինի պարտիան միշտ իր սրբազան պարտքը, իր ամենաառաջին պարտականությունն է համարել՝ ամրապնդել մեր Սովետական Սոցիալիստական պետությունը, բարձրացնել նրա հզորությունը։



Սովետական իշխանությունը փշրեց մեր երկրի զարգացմանը խանգարող կապանքները, հայրենական, հասցրեց սոցիալիստական հասարակարգը, որը մեծ ուժ տվեց մեր ժողովրդին և մեր բանակին։ Սովետական հասարակարգը հանդիսացավ ո՛չ միայն երկրի տնտեսական կազմակերպման և կուլտուրական վերելքի լավագույն ձևը խաղաղ շինարարության տարիներին, այլև թշնամուն հակահարված տալու համար ժողովրդի բոլոր ուժերի մոբիլիզացման լավագույն ձևը պատերազմի ժամանակ։ Ուրիշ ո՛չ մի պետություն չէր դիմանա այնպիսի փորձությունների, որոնցով անցավ Սովետական Միությունը։

Ով ուզում է, որ մեր պետությունը առաջիկայում էլ լինի ուժեղ ու հզոր, նա ձայն կտա կոմունիստների և անկուսակցականների բլոկի թեկնածուներին։

Հայրենական պատերազմի տարիներին ամբողջ ուժով երևան եկավ սովետական ժողովրդի բարոյական-քաղաքական միասնությունը։ Սովետական Միության բանվոր դասակարգը պատերազմի ժամանակ լարված աշխատանք ծավալեց ռազմաճակատին օգնելու համար, ցույց տալով աշխատանքային իսկական հերոսություն։ Եթե մեր բանակը սպառազինության, ռազմամթերքի, հանդերձանքի պակաս չէր զգում, ապա դա ամենից առաջ մեր բանվոր դասակարգի ծառայությունն է։ Կոլխոզների մեջ կազմակերպված սովետական գյուղացիությունը պատերազմի ժամանակվա պայմաններում, առանց ձեռքերը ծալելու, աշխատում էր դաշտերում, պարենամթերք մատակարարելով մեր բանակին և բնակչությանը, հումք հայթայթելով մեր ֆաբրիկաներին ու գործարաններին։ Սովետական ինտելիգենցիան իր ստեղծարար աշխատանքով անգնահատելի ավանդ մտցրեց թշնամուն ջախջախելու գործում, նա նորանոր նշանավոր նվաճումներով ու հայտնագործություններով հարստացրեց սովետական գիտությունը և տեխնիկան, կուլտուրան և արվեստը։ Կարմիր Բանակի, Ռազմա-Ծովային Նավատորմի շար-

քերում, պարտիզանական ջոկատներում Հայրենիքի համար արիաբար մարտնչում էին բանվորները, գյուղացիները, ինտելիգենցիան։ Պատերազմի անօրինակ դժվարությունները չընկճեցին, այլ է՛լ ավելի կոփեցին սովետական ժողովրդի կամքը, ոգին և միասնությունը։

Ով ուզում է, որ մեր ժողովուրդը միշտ լինի միասնական և համախմբված, նա ձայն կտա կոմունիստների և անկուսակցականների բլոկի թեկնածուներին։

Սովետական պետությունը հիմնված է ժողովուրդների իրավահավասարության և բարեկամության վրա։ Խաղաղ ժամանակ ՍՍՌՄ բոլոր ազգությունների աշխատավորները եղբայրական համագործակցությամբ զարգացնում էին իրենց տնտեսությունը և կուլտուրան։ Ահեղ վտանգի ժամին Սովետական Միության բոլոր ժողովուրդները, որպես եղբայրներ, ոտքի ելան ի պաշտպանություն իրենց Մայր-Հայրենիքի։ Ռուսները, ուկրաինացիները, բելոռուսները, ադրբեջանցիները, վրացիները, հայերը, թուրքմենները, ուզբեկները, տաջիկները, ղազախները, կիրգիզները, կարելները, մոլդավները, լիտվացիները, լատիշները, էստոնացիները և մեր մեծ երկրի բոլոր մյուս ժողովուրդները անձնվիրաբար պաշտպանում էին սովետական Հայրենիքը։ Այդ բանում դրսևորվեց Սովետական Միության ժողովուրդների ջերմ և կենսատու սովետական հայրենասիրությունը, այն քաղաքականության ուժն ու կենսունակությունը, որ անշեղորեն վարում էր բոլշևիկների պարտիան։ Սովետական հայրենասիրությունը մեր երկրի բոլոր ազգերին և ժողովուրդներին համախմբեց եղբայրական միասնական ընտանիքի մեջ։ Այժմ բոլորի համար ակներև է, որ մեր երկրի ժողովուրդները իրենց ազատությունը և անկախությունը կարողացան պաշտպանել հենց նրա համար, որ նրանք միավորված են Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության մեջ։ Հայրենական պատերազմում է՛լ ավելի ամրապնդվեց ժողովուրդների բարեկամությունը, նրանք է՛լ ավելի սերտ համախմբվեցին իրենց ավագ



եղբոր՝ ռուս ժողովրդի շուրջը։

Ով ուզում է, որ Սովետական Միության ժողովուրդները առաջիկայում էլ լինեն ազատ ու իրավահավասար, ով ձգտում է, որ հետագայում էլ ամրապնդվի ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամությունը, նա ձայն կտա կոմունիստների և անկուսակցականների բլոկի թեկնածուներին։

Սովետական Միությունը ուժեղ և հզոր տերություն է դարձել այն բանի շնորհիվ, որ մեր երկրում հաղթել է սոցիալիզմը։ Սոցիալիզմի հիման վրա լիկվիդացված է մեր երկրի տնտեսական դարավոր հետամնացությունը։ Հնգամյակների տարիներին սովետական ժողովուրդը իր համառ և անձնազոհ աշխատանքով ստեղծեց սոցիալիստական առաջավոր տնտեսություն։ Եվ դա մեր Հայրենիքը փրկեց հիտլերյան Գերմանիայի դեմ մղված պատերազմում։ Սովետական պետության տնտեսական հիմքը անհամեմատ ավելի կենսունակ դուրս եկավ, քան թշնամի պետությունների էկոնոմիկան։

Մեր հայրենական ինդուստրիան պատերազմի ժամանակ ամսեամիս ավելացնում էր իր արտադրանքը և հարաճուն քանակությամբ Կարմիր Բանակին մատակարարում էր ինքնաթիռ, տանկ, թնդանոթ, ռազմամթերք և հանդերձանք։ Այժմ, պատերազմի ավարտումից հետո, մեր ֆաբրիկաներն ու գործարանները փոխադրվում են խաղաղ ժամանակի արտադրանքի արտադրության։ Մեր երկրի առաջ բացվում են արդյունաբերության և ժողովրդական ամբողջ տնտեսության զարգացման լայն հնարավորություններ։ Սովետական երկրին չեն սպառնում ճգնաժամեր ու ցնցումներ, ինչպիսիք տեղի են ունենում կապիտալիստական երկրներում, Սովետական Միությունում չկան և չեն լինի ո՛չ ճգնաժամեր, ո՛չ գործազրկություն։

Սովետական ժողովրդի առաջ կանգնած է սոցիալիստական արդյունաբերության ու տրանսպորտի ամենաարագ վերականգնման և հետագա զարգացման խնդիրը։ Առաջիկա հնգամյակում անհրաժեշտ է ապա-

հովել մեր ծանր արդյունաբերության հետագա վերելքը՝ երկրին ավելի շատ մետաղ, ածուխ, նավթ տալու համար, ավելի շատ դազգահ, ավելի շատ շոգեքարշ, վագոն, ավտոմոբիլ, տրակտոր և այլ մեքենաներ արտադրելու համար։ Պետք է ձգտել, որ մեր արդյունաբերությունը և տրանսպորտը հագեցված լինեն է՛լ ավելի լավ սարքավորմամբ և կատարելագործված մեքենաներով, հզոր շարժիչներով, որպեսզի երկրի ժողովրդական տնտեսությանը ի սպաս դրվեն առաջավոր գիտության ու տեխնիկայի բոլոր նվաճումները։

Ով ուզում է սոցիալիստական արդյունաբերության նոր ծաղկում, ով ձգտում է, որ մեր սոցիալիստական տնտեսությունը ամենակարճ ժամկետում հասնի իր նախապատերազմյան մակարդակին և զգալիորեն գերազանցի այն, նա ձայն կտա կոմունիստների և անպարտիականների բլոկի թեկնածուներին։

Սովետական Միությունը կոլխոզային կարգի հաղթանակի շնորհիվ դարձել է սոցիալիստական առաջավոր գյուղատնտեսության երկիր։ Կոլխոզային կարգի հիման վրա վերափոխված է ժողովրդական տնտեսության ամենահետամնաց բնագավառը՝ հողագործությունը։ Խաղաղ շինարարության տարիներին սովետական պետությունն ստեղծեց հազարավոր մեքենատրակտորային կայաններ, կոլխոզներն ու սովխոզները հագեցրեց առաջավոր մեքենայական տեխնիկայով։ Պատերազմի պայմաններում կոլխոզային կարգը ցույց տվեց իր մեծ կենսունակ ուժը։ Եթե մեզ մոտ կոլխոզներ չլինեին, գյուղատնտեսությունը լիովին կքայքայվեր պատերազմի ժամանակ և բանակն ու երկիրը կթողներ առանց պարենամթերքի։ Միայն կոլխոզների շնորհիվ մեր գյուղատնտեսությունը պատվով կատարեց պատերազմի ժամանակվա խնդիրները։

Կոլխոզային գյուղը պատերազմի ժամանակ կրում էր զգալի դժվարություններ։ Ռազմաճակատի կարիքների համար աշխատող մեր արդյունաբերությունը հնարավորություն չուներ բավարարելու գյուղատնտե-



սության պահանջները։ Գյուղում նվազեց տրակտորների, կոմբայնների և գյուղատնտեսական մյուս մեքենաների քանակը։ Գերմանական զավթիչները օկուպացման ենթարկված շրջաններում ավերեցին գյուղատնտեսությունը։ Սովետական ժողովրդի առաջ կանգնած է գյուղատնտեսության բոլոր ճյուղերը լիովին վերականգնելու և է՛լ ավելի զարգացնելու խնդիրը։ Առաջիկա հնգամյակում անհրաժեշտ է բավարարել գյուղի անհետաձգելի կարիքները, հոգ տանել, որ գյուղը ստանա ավելի շատ տրակտոր, կոմբայն և գյուղատնտեսական այլ մեքենաներ, որպեսզի ընդլայնվեն և ամրապնդվեն մեքենատրակտորային կայանները, առաջ մղվի կոլխոզային գյուղի էլեկտրիֆիկացման գործը։ Խնդիրն այն է, որ վերականգնենք ու գերազանցենք նախապատերազմյան ցանքատարածությունները, զգալի չափով բարձրացնենք կոլխոզային դաշտերի բերքատվությունը, ավելացնենք անասունների գլխաքանակը և բարձրացնենք նրանց մթերատվությունը։ Պետք է ձգտել, որ կոլխոզային գյուղը կարճ ժամկետում հաղթահարի պատերազմի առաջ բերած դժվարությունները, որ բոլոր կոլխոզնիկները ապրեն ունևոր և կուլտուրական կյանքով։

Ով ուզում է սոցիալիստական գյուղատնտեսության նոր վերելք, ով ձգտում է, որ մեր երկիրն ունենա ավելի շատ հաց և գյուղատնտեսական այլ մթերքներ, որ բոլոր կոլխոզնիկներն ապրեն ունևոր և կուլտուրական կյանքով, նա ձայն կտա կոմունիստների և անպարտիականների բլոկի թեկնածուներին։

Սովետական պետությունը միշտ իր պարտքն է համարել շարունակ հոգ տանել սովետական ժողովրդի մասին, սովետական մարդկանց նյութական բարեկեցությունը բարելավելու մասին։ Խաղաղ շինարարության տարիներին լուրջ կերպով բարձրացավ սովետական ժողովրդի կյանքի նյութական և կուլտուրական մակարդակը։ Պատերազմի տարիներին մեր ժողովուրդը մեծ զրկանքներ կրեց։ Պատերազմի հետևանքները և

թշնամու կողմից մեր շատ շրջանների ավերումը անխուսափելիորեն երևան են գալիս նաև այժմ։ Բնակչության կյանքի պայմանները դեռևս մնում են դժվարին։ Ոչ քիչ ուժ պետք է գործադրել, որպեսզի սովետական մարդիկ կարողանան ապրել ավելի լավ և ավելի ապահով։

Խնդիրն այն է, որ զգալի չափով բարձրացնենք աշխատավորների բարեկեցությունը, որ սովետական պետությունը կարողանա բնակչությանը տալ ավելի շատ սննդամթերք և լայն սպառման ապրանքներ, լավացնել մեր քաղաքների և գյուղերի բարեկարգումը, ավելի լայն ծավալել բնակարանների, հիվանդանոցների և ծննդատների շինարարությունը, ավելացնել հանգստյան տների և սանատորիաների, մանկամսուրների և մանկապարտեզների, հասարակական ճաշարանների և կենցաղային այլ հիմնարկությունների թիվը։ Անհրաժեշտ է ուժեղացնել ամենօրյա հոգատարությունը կանանց և երեխաների մասին, է՛լ ավելի բարելավել սովետական կանանց աշխատանքի ու կենցաղի պայմանները, սովետական կանանց է՛լ ավելի լայնորեն ներգրավել ակտիվորեն մասնակցելու մեր երկրի քաղաքական, տնտեսական և կուլտուրական ամբողջ կյանքում։ Անհրաժեշտ է շարունակ հոգ տանել սովետական երիտասարդության աշխատանքի ու կենցաղի պայմանները բարելավելու մասին, ձգտել, որ մեր երիտասարդությունը ստանա բարձր որակավորում, տիրապետի գիտելիքներին, գիտությանը և կուլտուրային։ Մեր անհետաձգելի խնդիրն է՝ է՛լ ավելի լավ կազմակերպել Կարմիր Բանակի զորացրվող ռազմիկների և Հայրենական պատերազմի հաշմանդամների աշխատանքային ու կենցաղային կարգավորումը, համաժողովրդական հոգատարությամբ շրջապատել Հայրենիքի համար իրենց կյանքը զոհաբերած սովետական ռազմիկների ընտանիքներին, շարունակ հոգ տանել սովետական ժողովրդի խաղաղ աշխատանքը և անվտանգությունը պահպանող Կարմիր Բանակի մար-



տիկների ու սպաների ընտանիքների մասին։

Ով ուզում է, որ սովետական բոլոր մարդիկ ապրեն է՛լ ավելի ապահով և կուլտուրական կյանքով, ով ձգտում է մեր սովետական ժողովրդի նյութական բարեկեցության վերելքին, նա ձայն կտա կոմունիստների և անկուսակցականների բլոկի թեկնածուներին։

Սովետական իշխանության տարիներին մեր երկիրը դարձավ առաջավոր կուլտուրայի երկիր։ Պատերազմից առաջ ՍՍՌՄ ժողովուրդների կուլտուրան հասել էր մեծ հաջողությունների։ Անընդհատ աճում էր դպրոցների ու բուհերի, թատրոնների ու կինոների, ակումբների և գրադարանների թիվը։ Սովետական իշխանության տարիներին միլիոնավոր բանվորներ, գյուղացիներ և նրանց երեխաները ստացան բարձրագույն ու միջնակարգ կրթություն, դարձան մտավոր աշխատանքի աշխատողներ։ Պատերազմի ժամանակ հարկ եղավ ակամայից սահմանափակել կուլտուրայի կարիքների ծախսերը, ավելի քիչ միջոցներ հատկացնել ժողովրդական կրթությանը։ Կուլտուրայի ու ժողովրդական կրթության գործին մեծ վնաս հասցրին գերմանա-ֆաշիստական զավթիչները, որոնք օկուպացման ենթարկված շրջաններում ավերեցին ու կողոպտեցին շատ դպրոցներ, կուլտուրական և գիտական հիմնարկություններ։

Խնդիրն այն է, որ ամբողջովին վերականգնենք և զգալի չափով ընդլայնենք տարրական ու միջնակարգ դպրոցների, բարձրագույն ուսումնական հաստատությունների, ժողովրդական գրադարանների, թատրոնների ու կինոների ցանցը, ձգտենք սովետական կուլտուրայի ու արվեստի հետագա ծաղկմանը։ Անհրաժեշտ է հոգ տանել սովետական գիտության հետագա զարգացման մասին, ամեն կերպ օժանդակել գիտության մարդկանց, ձգտել գիտելիքները լայնորեն տարածել ժողովրդական մասսաների մեջ, է՛լ ավելի ընդլայնել ու բարելավել գիտական և տեխնիկական կադրերի նախապատրաստումը։ Սովետական գիտությունը և տեխնիկան պետք է անընդհատ առաջ գնան և ըն-

թանան համաշխարհային գիտության ու տեխնիկայի առաջին շարքերում։

Ով ուզում է հետագա արագ հաջողություններ մեր երկրի կուլտուրայի, գիտության և արվեստի զարգացման մեջ, ով ձգտում է լավ կրթություն տալ սովետական մարդկանց աճող սերնդին, նա ձայն կտա կոմունիստների և անկուսակցականների բլոկի թեկնածուներին։

Պատերազմի ժամանակ գերմանա-ֆաշիստական զավթիչները ծանր վերքեր հասցրին մեր երկրին, շատ վիշտ ու զրկանք պատճառեցին սովետական ժողովրդին։ Գերմանական չարագործները այրում և ոչնչացնում էին մեր քաղաքներն ու գյուղերը, ավերում և կողոպտում մեր արդյունաբերական ձեռնարկությունները, տրանսպորտը, կոլխոզները, սովխոզները և մեքենատրակտորային կայանները։ Սովետական ժողովուրդը ձեռնամուխ է եղել տնտեսության վերականգնմանը՝ գերմանական օկուպացիայից ազատագրված շրջաններում։ Սակայն միայն առաջին քայլերն են արված ֆաշիստական հորդաների արշավանքից տուժած բնակչության համար կյանքի նորմալ պայմաններ ստեղծելու գործում։ Մեր ժողովուրդը դեռևս շատ աշխատանք ու եռանդ պետք է գործադրի ֆաշիստական ճիվաղների կողմից մեր երկրին պատճառված վերքերը բուժելու համար։ Սովետական ժողովրդի առաջ խնդիր է դրված՝ լրիվին վերականգնել թշնամու կողմից ավերված ֆաբրիկաները, գործարանները, էլեկտրակայանները, ածխահորերը, հանքերը, երկաթուղիները, կոլխոզների, մեքենատրակտորային կայանների և սովխոզների տնտեսությունը, վերականգնել և կառուցել նոր բնակարաններ՝ գերմանական օկուպացիայից տուժած բոլոր աշխատավորներին օթևան ապահովելու համար։

Ով ուզում է, որ ավելի արագ վերականգնվի թշնամու կողմից ավերված տնտեսությունը և կյանքի նորմալ պայմաններ ստեղծվեն գերմանական օկուպացիայից ազատագրված շրջանների բնակչության հա-



մար, ով ձգտում է, որ պատերազմի պատճառած վերքերը բուժվեն ամենակարճ ժամկետում, նա ձայն կտա կոմունիստների և անկուսակցականների բլոկի թեկնածուներին։

Սովետական Միությունը թևակոխել է իր պատմական զարգացման նոր շրջանը։ Սովետական ժողովրդի խաղաղ ստեղծարար աշխատանքը և նրա անվտանգությունը պաշտպանում է մեր պանծալի Կարմիր Բանակը։ Բոլշևիկների պարտիայի կողմից ղեկավարվող Կարմիր Բանակը պատերազմի ընթացքում թշնամուն գերազանցեց իր ուժով և պատերազմելու հմտությամբ։ Սովետական ռազմիկները հերոսություն ու քաջություն ցույց տվին Հայրենիքի համար մղած ճակատամարտերում։ Սովետական հետևակը, հրետանին, ավիացիան, տանկային զորքերը, Ռազմա-Ծովային Նավատորմը, ՍՍՌՄ բոլոր զինված ուժերը պատվով կատարեցին իրենց պարտքը Հայրենիքի հանդեպ։ Սովետական ժողովուրդը կարող է վստահել իր բանակին։ Կոմունիստական պարտիան այսուհետև էլ անդուլ կերպով կպայքարի սովետական պետության զինված ուժերի հետագա ամրապնդման համար։

Ով ուզում է, որ մեր Հայրենիքի սահմանները անմատչելի լինեն թշնամու համար, ով ձգտում է առաջիկայում ևս ամրապնդել մեր Կարմիր Բանակը և Ռազմա-Ծովային Նավատորմը՝ մեր Հայրենիքի հավատարիմ պաշտպաններին, նա ձայն կտա կոմունիստների և անկուսակցականների բլոկի թեկնածուներին։

Սովետական զենքի հաղթանակը, ինչպես նաև խաղաղության և ժողովուրդների բարեկամության քաղաքականությունը, որ հաստատուն կերպով և անշեղորեն վարում է Սովետական պետությունը, բարձրացրել են Սովետական Միության միջազգային հեղինակությունը, խիստ բարձրացրել ՍՍՌՄ-ի դերը միջազգային բոլոր գործերի լուծման մեջ։ Սովետական պետությունը շահեց պատերազմը, կարողացավ պաշտպանել ՍՍՌՄ ժողովուրդների պետական շահերը։ Սակայն պատերազմ շահելը դեռևս չի նշանակում կայուն

խաղաղություն և հուսալի անվտանգություն ապահովել ապագայում։ Որպեսզի սովետական ժողովուրդը և բոլոր խաղաղասեր ժողովուրդները կարողանան օգտվել խաղաղության ու անվտանգության բարիքներից, անհրաժեշտ է ամրապնդել մեր նվաճած հաղթանակը։ Պետք է հիշել, որ աշխարհում դեռևս կան ռեակցիոն ուժեր, որոնք փորձում են դժգոհություն և թշնամանք սերմանել ժողովուրդների միջև։

Խնդիրն այն է, որ հետագայում ամրապնդենք ՍՍՌՄ ժողովուրդների անվտանգությունը։ Անհրաժեշտ է արթուն կերպով պահպանել Հայրենական Մեծ պատերազմում սովետական ժողովրդի նվաճումները, կայուն կերպով պաշտպանել Սովետական Միության շահերը։ Անհրաժեշտ է մյուս երկրների դեմոկրատական ուժերի հետ միասին պայքարել խաղաղասեր տերությունների համագործակցության ամրապնդման համար, ֆաշիզմի բոլոր արմատները արմատախիլ անելու համար, ապագայում ամեն մի ագրեսիա կանխելու համար։

Ով ուզում է, որ մեր մարդկանց արյունով նվաճված մեծ հաղթանակը հաստատ ամրապնդվի, ով ձգտում է ապահովել ՍՍՌՄ ժողովուրդների անվտանգությունը, ով կողմնակից է սովետական արտաքին քաղաքականությանը, որն անշեղորեն պաշտպանում է ՍՍՌՄ ժողովուրդների պետական շահերը և ամբողջ աշխարհի խաղաղության գործը, նա ձայն կտա կոմունիստների և անպարտիականների բլոկի թեկնածուներին։

Լենինի-Ստալինի պարտիան հանդիսացավ սովետական ժողովրդի ղեկավար ուժը ինչպես խաղաղ շինարարության ժամանակաշրջանում, այնպես էլ պատերազմի տարիներին։ Մեր ժողովուրդը անշեղորեն ընթանում էր այն ուղիով, որով նրան առաջնորդում էին նրա կոմունիստական պարտիան, պարտիայի և ժողովրդի մեծ առաջնորդ ընկեր Ստալինը։ Հայրենական պատերազմի օրերին պարտիան, ընկեր Ստալինի գլխավորությամբ, հանդիսացավ համաժողովրդական պայքարի ոգեշնչողն ու կազմակերպիչը ֆաշիստական



զավթիչների դեմ։ Պատերազմի ժամանակ կոմունիստական պարտիան է՛լ ավելի հարազատ դարձավ ժողովրդին, է՛լ ավելի սերտորեն կապվեց աշխատավորների լայն մասսաների հետ։ Հայրենիքին անձնվիրաբար ծառայելով՝ բոլշևիկների պարտիան նվաճեց սովետական ժողովրդի սերն ու վստահությունը։ Կոմունիստների պարտիան հպարտանում և թանկ է գնահատում այն վստահությունը, որ մեր ժողովուրդը ցույց է տվել և ցույց է տալիս նրան։ Լենինի-Ստալինի պարտիան այսուհետև էլ հույս ունի վայելելու սովետական ժողովրդի վստահությունը։

Համամիութենական Կոմունիստական (բոլշևիկների) Պարտիայի Կենտրոնական Կոմիտեն կոչ է անում բոլոր բանվորներին ու բանվորուհիներին, գյուղացիներին ու գեղջկուհիներին, Կարմիր Բանակի և Ռազմա-Ծովային Նավատորմի ռազմիկներին, սովետական ինտելիգենցիային, բոլոր ընտրողներին, ՍՍՌՄ Գերագույն Սովետի առաջիկա ընտրությունների ժամանակ է՛լ ավելի սերտորեն համախմբվել բոլշևիկյան պարտիայի շուրջը, Սովետական Միության ժողովուրդների առաջնորդ ընկեր Ստալինի շուրջը, պայքարելու համար մեր Հայրենիքի հետագա ծաղկման, մեր երկրում կոմունիզմի լիակատար հաղթանակի համար։

Համամիութենական Կոմունիստական (բոլշևիկների) Պարտիայի Կենտրոնական Կոմիտեն կոչ է անում բոլոր կոմունիստներին նույնպիսի միահամուռությամբ ձայն տալ դեպուտատության անպարտիական թեկնածուներին, ինչպես և կոմունիստ թեկնածուներին։ Բոլշևիկների պարտիան հույս ունի, որ անպարտիական ընտրողները ձայն կտան դեպուտատության կոմունիստ թեկնածուներին այնպիսի միահամուռությամբ, ինչպես և անպարտիական թեկնածուներին։

Ընկե՛ր ընտրողնե՛ր։ Ձայն տվեք կոմունիստների և անպարտիականների բլոկի թեկնածուներին։

Համամիութենական Կոմունիստական (բոլշևիկների) Պարտիայի Կենտրոնական Կոմիտեն կոչ է անում ընտրողներին 1946 թվի փետրվարի 10-ին բոլորը մեկ

*մարդու նման ներկայանալ քվեատուների մոտ: Չպետք է լինի ոչ մի ընտրող, որը չօգտագործի ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատներ ընտրելու իր պատվավոր իրավունքը:*

*1946 թվի փետրվարի 10-ի օրը պետք է լինի Սովետական Միության աշխատավորների համաժողովրդական տոնի, Լենինի-Ստալինի պարտիայի շուրջը նրանց միասնության և համախմբվածության ցույցի օր:*

## ԲՈԼՈՐԸ ԴԵՊԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Կեցցե՛ մեր մեծ Հայրենիքը՝ Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միությունը:

Կեցցե՛ սովետական ժողովուրդը:

Կեցցե՛ սովետական իշխանությունը:

Կեցցե՛ մեր երկրի ժողովուրդների բարեկամությունը:

Կեցցե՛ կոմունիստների և անպարտիականների բլոկը ՍՍՌՄ Գերագույն Սովետի առաջիկա ընտրություններին:

Կեցցե՛ Համամիութենական Կոմունիստական (բոլշևիկների) Պարտիան՝ Լենինի-Ստալինի պարտիան:

Կեցցե՛ սովետական ժողովրդի առաջնորդ մեծ ՍՏԱԼԻՆԸ:

**ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ (ԲՈԼՇԵՎԻԿՆԵՐԻ) ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵ**

Պատասխանատու խմբագիր՝ *Ս. ԱՐԵՇՅԱՆ*

*ՎՖ 00308 պ. № 241, տիրաժ 5000*

ՀՍՍՌ ԺԿԽ-ին ԿԻՑ ՊՈԼԻԳՐԱՖ ԵՎ ՀՐԱՏ. ՎԱՐՉ. № 2 ՏՊԱՐԱՆ